Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 21 ՆՈՅԵՄԲԵՐ 1950

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Խմբագրության հասցեն.— *Երևան, ՀԿ(բ)Պ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78։*

# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՈՒՑԻԱՅԻ 33-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆԻ զեկուցումը Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում, 1950 թվականի նոյեմբերի 6-ին

*Ընկերնե՛ր։*

*Այսօր Սովետական Միության ժողովուրդները տոնում են Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի երեսուներեքերորդ տարեդարձը, ռևոլյուցիա, որը դրեց նոր դարաշրջանի, կապիտալիստական ստրկությունից աշխատավորների ազատագրման դարաշրջանի սկիզբը։*

*Հոկտեմբերյան ռևոլյուցիան կյանքի կոչեց մեր ժողովրդի աննախընթաց ստեղծագործական եռանդն ու նախաձեռնությունը։ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սովետական մարդիկ չտեսնված հերոսություն ցուցաբերեցին ինչպես խաղաղ աշխատանքում, այնպես էլ իրենց Հայրենիքի ռազմական պաշտպանության գործում։ Լուրջ դժվարություններ հաղթահարելով իր ճանապարհին, սովետական ժողովուրդը*

պատմական կարճ ժամկետում ստեղծեց սովետական սոցիալիստական հասարակակարգ և այժմ վստահորեն ընթանում է դեպի մեծ նպատակը՝ դեպի կոմունիզմ։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակի շնորհիվ ստեղծված մեր սովետական հասարակակարգը վերափոխող մեծ ազդեցություն է թողնում ամբողջ համաշխարհային պատմության զարգացման վրա։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հռչակած սկզբունքները այժմ միավորում են սոցիալիզմի և դեմոկրատիայի հզոր ռազերը, որին գլխավորում է Սովետական Միությունը։ Մենք իրավամբ այդ նշում ենք որպես մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակը։

Իրադարձությունների ամբողջ ընթացքով հաստատված է կապիտալիզմի անխուսափելի կործանման վերաբերյալ մարքսիստական-լենինյան ուսմունքի ճշտությունը, կապիտալիզմ, որը XIX և XX դարերի սահմանագլխին մտել է իր զարգացման վերջին ստադիան՝ իմպերիալիզմի ստադիան։ Հաստատվեց մարքսիզմ-լենինիզմի գիտական այն հետևությունը, որ բանվոր դասակարգը ռևոլյուցիոն մարքսիստական պարտիայի գլխավորությամբ հանդիսանում է այն ուժը, որը ընդունակ է աշխատավորներին ոտքի հանել կապիտալիզմից ազատագրվելու համար, իր վրա վերցնել հասարակության պետական ղեկավարումը և իրագործել սոցիալիզմի կառուցման ազնիվ նպատակը։ Սովետական պետության կառուցման փորձով, պետություն, որը ազգերի եղբայրական համագործակցության օրինակ է ցույց տալիս, մյուս երկրների ժողովուրդները համոզվում են կապիտալիզմի հանդեպ սոցիալիզմի գերազանցության, մարքսիզմ-լենինիզմի արդարության և կենսական ուժի մեջ։



I

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՆՐԱ ՆԵՐՔԻՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒՂՂՈՒԹՅԱՄԲ

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի երեսուներեքերորդ տարեդարձը սովետական ժողովուրդը դիմավորում է քաղաքական, տնտեսական և կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում ձեռք բերած մեծ հաջողություններով։

Գլխավոր հանրագումարը, որով մենք հասել ենք Հոկտեմբերյան ռևոլյուցիայի տարեդարձին, այն է, որ է՛լ ավելի է աճել և ամրապնդվել Սովետական սոցիալիստական պետության քաղաքական ու տնտեսական ուժը։ Հետպատերազմյան տարիներին ոչ միայն սովետական մարդկանց մեջ, այլև մյուս երկրների աշխատավորների մեջ է՛լ ավելի բարձրացավ Սովետական իշխանության՝ աշխարհում ամենադեմոկրատական, իր ժողովրդի լիակատար վստահությունն ու սերը վայելող իշխանության հեղինակությունը։ Մեր սովետական հասարակակարգը ապահովում է ժողովրդական ամենալայն մասսաների ակտիվ մասնակցությունը պետական ու հասարակական կյանքում և հանդիսանում է նրանց ստեղծագործական ուժերի զարգացման լավագույն ձևը։ Մեր պետության ղեկավար և ուղղություն տվող ուժը հանդիսանում է կոմունիստական պարտիան, որի քաղաքականությունը սովետական մարդիկ համարում են իրենց քաղաքականությունը, նրա մեջ տեսնելով իրենց շահերի մարմնացումը։ Աշխարհում չկա բուրժուական ոչ մի կառավարություն, որի ներքին քաղաքական դրությունը լիներ նույնքան կայուն և անսասան, ինչպես կայուն և անսասան է Սովետական Կառավարության դրությունը։ **(Ծափահարություններ)**։

Խաղաղ զարգացման տարիներին Սովետական Միության ձեռք բերած հաջողությունները մեր ժողովրդի մեջ

է՛լ ավելի ամրապնդեցին սովետական հայրենասիրության զգացմունքը, որի ուժը, ինչպես սովորեցնում է ընկեր Ստալինը, այն է, որ նա իր հիմքում ունի ոչ թե ռասսայական կամ նացիոնալիստական նախապաշարումներ, այլ ժողովրդի խոր նվիրվածությունն ու հավատարմությունն իր Հայրենիքին, մեր երկրի բոլոր ազգերի աշխատավորների եղբայրական համագործակցությունը։

Ստեղծարար աշխատանքում, ի բարօրություն սոցիալիստական Հայրենիքի, զարգանում և ամրապնդվում են մեր երկրի ժողովուրդների եղբայրական համագործակցությունն ու բարեկամությունը։ Ամբողջ Սովետական Միության աջակցությամբ ավերակներից բարձրացել և արագորեն առաջ է ընթացել այն շրջանների տնտեսությունը, որոնք թշնամու կողմից ենթարկվել էին օկուպացիայի։ Ժողովուրդների համերաշխ ընտանիքում մեր բոլոր ռեսպուբլիկաները վերջին տարիների ընթացքում քաղաքական, տնտեսական և կուլտուրական խոշոր հաջողություններ են ձեռք բերել։

Կոմունիստական շինարարության մեծ նպատակների իրագործման համար մղվող պայքարում անշեղորեն ամրապնդվում է սովետական հասարակության բարոյաքաղաքական միասնությունը, հասարակություն, որը սերտորեն համախմբված է պարտիայի և Սովետական իշխանության շուրջը։ Այդ մասին համոզիչ կերպով խոսում են ՍՍՌՄ Գերագույն Սովետի և ազգային ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների ընտրությունների հանրագումարները, ընտրություններ, որ տեղի ունեցան հետպատերազմյան ժամանակաշրջանում և փայլուն հաղթանակ բերին կոմունիստների ու անպարտիականների ստալինյան բլոկին։

Սովետական հասարակական ու պետական կարգի առավելությունները, որոնք բացառիկ ուժով արտահայտվեցին պատերազմի տարիներին, նույնքան բեղմնավոր կերպով դրսևորվում են նաև խաղաղ զարգացման պայմաններում։



Հետպատերազմյան ժամանակաշրջանում սովետական ժողովրդի տնտեսական և կուլտուրական գործունեության հիմքը երկրի ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման 1946—1950 թվականների հնգամյա պլանն էր, որը ընդունվեց մեր Հայրենիքի կողմից երբևէ ապրած բոլոր պատերազմներից ամենածանր՝ Հայրենական Մեծ պատերազմն ավարտվելուց անմիջապես հետո։ Մեր երկրին պատերազմի հասցրած նյութական վնասը այնքան լուրջ էր, որ մեր թշնամիները դրա վրա կառուցում էին իրենց շահադիտական հաշիվները։ Նրանք հույս ունեին, թե մենք չենք կարողանա մեր ուժերով դուրս գալ հետպատերազմյան դժվարություններից։ Սակայն նրանց հաշիվները սնանկ դուրս եկան։ Սովետական Միությունն իր մեջ ուժեր ու հնարավորություններ գտավ ոչ միայն բուժելու պատերազմի հասցրած վերքերը, այլև կազմակերպելու արդյունաբերության ու տրանսպորտի, գյուղատնտեսության, կուլտուրայի և աշխատավորների նյութական բարեկեցության հետագա հզոր վերելքը։

Սովետական ժողովուրդը հնգամյա պլանը ընդունեց որպես իր կենսական շահերին համապատասխանող մարտական ծրագիր և ոգևորությամբ ձեռնամուխ եղավ այդ պլանի կենսագործմանը։ Սովետական մարդիկ կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ուժ ու աշխատանք չէին խնայում հետպատերազմյան հնգամյակի կատարման ու գերակատարման համար մղվող պայքարում։ Այդ տարիներին նորից դրսևորվեցին սովետական ժողովրդի հիանալի հատկություններն ու ստեղծագործական ուժերը, է՛լ ավելի աճեց սովետական մարդկանց քաղաքական գիտակցականությունն ու հասարակական ակտիվությունը։

Հետպատերազմյան հնգամյակը նոր փառապանծ էտապ է մեր երկրի զարգացման գործում։

Հնգամյա պլանի հիմնական խնդիրներն էին՝ վերականգնել երկրի տուժած շրջանները, վերականգնել

արդյունաբերության ու գյուղատնտեսության նախապատերազմյան մակարդակը և այնուհետև նշանակալից չափերով գերազանցել այդ մակարդակը։ Մեր մեծ Հայրենիքի նկատմամբ հպարտության զգացումով մենք կարող ենք այսօր ասել, որ հնգամյակի այդ խնդիրները հաջողությամբ կատարվել են։ (Ծափահարություններ):

Հնգամյա պլանով սահմանվել էր, որ Սովետական Միության ամբողջ արդյունաբերության արտադրանքը 1950 թվականին, նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ, պետք է ավելանա 48 տոկոսով։ Մեր արդյունաբերությունը ոչ միայն հասել է արտադրության այդ մակարդակին, այլև զգալիորեն գերազանցել է այն։ Ինչպես հայտնի է, արդեն 1949 թվականի 4-րդ եռամսյակում համախառն արտադրանքի միջին ամսական թողարկումը 1940 թվականի մակարդակը գերազանցեց 53 տոկոսով։ Ընթացիկ տարում արդյունաբերական արտադրության ծավալը է՛լ ավելի ընդարձակվեց։ Արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման գծով նախապատերազմյան մակարդակը 1950 թվականի 10 ամիսների ընթացքում գերազանցվել է 70 տոկոսով։ (Ծափահարություններ):

Արդյունաբերական արտադրության աճման և ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման բարձր տեմպերը ապահովվում են կապիտալ շինարարության նշանակալից ծավալով։ Հետպատերազմյան հնգամյակի անցած ժամանակաշրջանում վերականգնըվել և նոր կառուցվել է մոտ 6.000 արդյունաբերական ձեռնարկություն, չհաշված պետական ու կոոպերատիվ մանր ձեռնարկությունները։ Պատերազմից տուժած շրջանների արդյունաբերությունը ոչ միայն լիովին վերականգնվել է, այլև զգալիորեն ընդլայնվել է նոր և առավել ժամանակակից տեխնիկայի հիման վրա։

Հաջողությամբ իրագործվում է ծանր արդյունաբերության առաջնահերթ վերականգնման ու զարգացման խնդիրը։



Սև մետալուրգիայի զարգացման հնգամյա պլանի առաջադրանքները գերակատարված են։ Հնգամյա պլանի համաձայն 1950 թվականին պետք է արտադրվեն 35 տոկոսով ավելի սև մետաղներ, քան 1940 թվականին։ Ընթացիկ տարվա 10 ամիսների ընթացքում սև մետաղների արտադրությունը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 44 տոկոսով, այդ թվում չուգունի ձուլումը՝ 28 տոկոսով, պողպատի ձուլումը՝ 48 տոկոսով և գլանվածքի արտադրությունը՝ 58 տոկոսով։

Այդ արդյունքներին հասնելու համար, մեր մետալուրգներին և կառուցողներին հարկ եղավ շատ աշխատել։ Ինչպես հայտնի է, պատերազմի ժամանակ Հարավի մետալուրգիական արդյունաբերությունը լիովին ավերվեց։ Այժմ նա ամբողջությամբ վերականգնվել է տեխնիկական նոր բազայի վրա և ավելի շատ մետաղ է տալիս, քան պատերազմից առաջ։ (Ծափահարություններ):

Շարունակվում էր սև մետալուրգիայի հետագա զարգացումը երկրի արևելյան շրջաններում։ Գլանվածքի արտադրության մակարդակը այդ շրջաններում նախապատերազմյան մակարդակից երկուս ու կես անգամ ավելի բարձր է։

Հնգամյա պլանի առաջադրանքներին համապատասխան գունավոր մետալուրգիայի ասպարեզում զգալիորեն ընդլայնվել է գունավոր և հազվագյուտ մետաղների՝ ալյումինի, կապարի, նիկելի, պղնձի, արճճի, ցինկի, մագնիումի, վոլֆրամային և մոլիբդենային կոնցենտրատների արտադրությունը։ Գերակատարված է ածխի հանույթի գծով հնգամյա պլանի առաջադրանքը։

Հնգամյա պլանի համաձայն ածխի հանույթը 1950 թվականին պետք է 1940 թվականի դիմաց աճեր 51 տոկոսով։ Ընթացիկ տարվա տասն ամիսների ընթացքում ածխի հանույթը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 57 տոկոսով և հանույթի չափերի տեսակետից Սովետական Միությունը գրավեց աշխարհում երկրորդ տեղը։ (Ծափահարություններ):

Վերականգնվել է Դոնբասի ամբողջ քարածխային արդյունաբերությունը, որը լիովին ավերվել էր պատերազմի ժամանակ։ Դոնբասի ածխահորերը ներկայումս ավելի շատ քարածուխ են տալիս, քան պատերազմից առաջ և ավելի շատ, քան նախատեսված է հնգամյակով։ Դոնբասը նորից հանդիսանում է երկրի ամենախոշոր ու առավել մեքենայացված քարածխային ավազանը։

Մերձմոսկովյան ավազանը, որը նույնպես լիովին ավերվել էր, այժմ երեք անգամ ավելի շատ քարածուխ է տալիս, քան պատերազմից առաջ։

Դոնբասի և Մոսբասի վերականգնման հետ միասին շարունակվում էր քարածխային արդյունաբերության զարգացումը Ուրալում, Կուզբասում, Կարագանդայի ավազանում և երկրի արևելյան այլ շրջաններում։ Արևելքում ներկայումս արդյունահանվում է երկու անգամից ավելի շատ ածուխ, քան նախապատերազմյան ժամանակ։ Գերակատարվում է հնգամյա պլանի առաջադրանքը՝ Հյուսիսի և Լենինգրադի շրջանների նոր քարածխային բազան՝ Պեչորայի քարածխային ավազանը ընդլայնելու ուղղությամբ։ Յուրացվում են քարածխային նոր հանքավայրեր երկրի այլ շրջաններում։

Հաջողությամբ զարգանում է մեր նավթային արդյունաբերությունը։ Հնգամյա պլանի առաջադրանքը նավթի հանույթի գծով գերակատարված է։ Հնգամյա պլանով նախատեսվում էր 1950 թվականին նավթի հանույթը նախապատերազմյան հանույթի դիմաց ավելացնել 14 տոկոսով։ Այս տարվա տասն ամիսների ընթացքում նավթի հանույթը նախապատերազմյան մակարդակը գերազանցեց 21 տոկոսով։

Լիովին վերականգնվել ու տեխնիկապես վերազինվել է պատերազմի ժամանակ ավերված՝ Մայկոպի և Գրոզնու նավթային շրջանների նավթային արդյունաբերությունը և Արևմտյան Ուկրաինայի նավթային արդյունաբերությունը։



Լուրջ կերպով աճել է Արևելքում նոր նավթային շրջանների նշանակությունը։ Ստեղծվել են նոր խոշոր նավթահանքեր և նավթամշակման գործարաններ Բաշկիրիայում։ Արագորեն զարգանում է նավթի հանույթն ու վերամշակումը Կույբիշևի մարզում, Թուրքմենական, Ուզբեկական ու Ղազախական ռեսպուբլիկաներում։ Բացվել են նոր խոշոր նավթահանքեր Թաթարական ռեսպուբլիկայում։ Մեծ աշխատանքներ են կատարվում Սախալինում նավթի հանույթի զարգացման ուղղությամբ։ Արևելյան շրջանների տեսակարար կշիռը նավթի ընդհանուր հանույթի գծով Միության մեջ 1940 թվականի 12 տոկոսի դիմաց ավելացել է մինչև 44 տոկոս։

Նավթամշակման արդյունաբերությունը տեխնիկապես վերազինվել է, յուրացրել և արտադրում է բարձրօկտանային ավիաբենզինի և վառելանյութի ու յուղերի այլ տեսակների նոր սորտեր։

Էլեկտրաէներգիայի արտադրությունը նախապատերազմյանի համեմատությամբ հնգամյակի վերջին տարում պետք է ավելանար 70 տոկոսով, իսկ փաստորեն նա աճել է 87 տոկոսով։ Պատերազմից տուժած շրջաններում, որտեղ էլեկտրակայանները լիովին ավերվել էին, նրանց կարողությունը և էլեկտրաէներգիայի արտադրությունը ներկայումս գերազանցել են նախապատերազմյան մակարդակը։

Արագ տեմպերով զարգանում է մեքենաշինությունը։

Հաջողությամբ կատարվում են հնգամյա պլանի առաջադրանքները մեքենաների, մեխանիզմների ու գործիքների արտադրության գծով։ Հնգամյա պլանով նախատեսված էր սարքավորման թողարկումը նախապատերազմյանի համեմատությամբ 1950 թվականին ավելացնել երկու անգամ։ Ընթացիկ տարվա 10 ամսում մեքենաշինության արտադրանքը նախապատերազմյան մակարդակը գերազանցել է 2,2 անգամ։ Ընդ որում մե-

տալուրգիական սարքավորման արտադրությունն ավելացել է 5 անգամ, շոգետուրբինների թողարկումը՝ 2,5 անգամ, խոշոր էլեկտրամոտորներինը՝ 5 անգամ, նավթասպարատուրայինը՝ ավելի քան 3 անգամ, էքսկավատորներինը՝ 13 անգամ։

Վերջին տարիներին սովետական մեքենաշինարարները, հենվելով հայրենական գիտության նվաճումների վրա, ստեղծել և յուրացրել են նոր տիպի ժամանակակից շատ մեքենաներ ու մեխանիզմներ։

Հնգամյակի տարիներին արդյունաբերության մեջ զգալիորեն բարելավվել է սարքավորման օգտագործումը։ Օրինակ, դոմնային հնոցները 25 տոկոսով ավելի լավ են օգտագործվում, քան նախապատերազմյան ժամանակ, իսկ մարտենյան հնոցները՝ 32 տոկոսով։ Նավթահորերի շահագործական հորատման արագությունը նախապատերազմյանի համեմատությամբ ավելացել է 43 տոկոսով։

Սակայն, ինչպես ցույց է տալիս առաջավոր բանվորների, առաջավոր ձեռնարկությունների ու ցեխերի փորձը, դեռևս շատ ռեզերվներ ու հնարավորություններ կան սարքավորումը ավելի արտադրողաբար օգտագործելու համար։

Նոր տեխնիկայի հաջող արմատավորումը թույլ է տվել մեծ մասշտաբներով անցկացնել ժողովրդական տնտեսության տեխնիկական հետագա վերազինումը և բարձրացնել աշխատատար ու ծանր աշխատանքների մեքենայացման մակարդակը։ Դրան զուգընթաց տեխնիկական պրոգրեսը, մեր կադրերի որակի բարձրացումը և բանվորների, ինժեներների ու տեխնիկների ստեղծարար նախաձեռնությունը ապահովել են աշխատանքի արտադրողականության զգալի աճ։

Հնգամյա պլանով արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության աճը 1950 թվականին, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, նախատեսված էր 36 տոկոսով։ Փաստորեն բանվորնե-



րի աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ 1950 թվականի երրորդ եռամսյակում նախապատերազմյան մակարդակից բարձր է եղել ավելի քան 40 տոկոսով։ Արդյունաբերության մեջ հիմնական աշխատանք է կատարվում հումքի, նյութերի, վառելիքի և էլեկտրաէներգիայի խնայողության, արտադրական տարածությունների օգտագործման բարելավման, շրջանառու միջոցների շրջանառության արագացման ասպարեզում։ Դրա շնորհիվ արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման գծով կառավարության սահմանած պլանները կատարվում ու գերակատարվում են։

Երկաթուղային տրանսպորտը նույնպես, ինչպես և արդյունաբերությունը, աշխատում է այնպիսի մակարդակով, որը գերազանցում է հնգամյա պլանի առաջադրանքները։ Հնգամյա պլանով նախատեսված էր 1950 թվականին երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը նախապատերազմյանի համեմատությամբ ավելացնել 28 տոկոսով։ Ընթացիկ տարվա 10 ամսում բեռնաշրջանառությունը նախապատերազմյան մակարդակը գերազանցել է ավելի քան 40 տոկոսով։ Ավելացվել և նորացվել է շոգեքարշերի ու վագոնների պարկը և ստեղծվել է հայրենական էլեկտրաքարշաշինության և ջերմաքարշաշինության բազա։

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել գյուղատնտեսության մեջ։ Ընթացիկ տարում հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը կկազմի 7 միլիարդ 600 միլիոն փութ և նախապատերազմյան 1940 թվականի մակարդակը կգերազանցի ավելի քան 300 միլիոն փթով։ Ընդսմին ցորենի համախառն բերքը 1940 թվականի բերքից գերազանցում է 340 միլիոն փթով։

Բամբակի համախառն բերքը 1940 թվականի բերքից կգերազանցի ավելի քան 40 տոկոսով։ Բարձրացել է շաքարի ճակնդեղի բերքատվությունը։ Ընթացիկ տարում շաքարի ճակնդեղ, որպես մինիմում, կհավաքվի 25 միլիոն ցենտներ ավելի, քան 1940 թվականին։

Հաջողությամբ կատարվում է Միության եվրոպական

մասի տափաստանային և անտառատափաստանային շրջաններում դաշտապաշտպան անտառատնկումների, խոտադաշտային ցանքաշրջանառությունների արմատավորման, լճակների ու ջրամբարների կառուցման 1948 թվականին ընդունված պլանը։ Երկու տարում անտառատնկումներ են կատարվել 1.300 հազար հեկտար տարածության վրա. այդ շրջանների կոլխոզներում ու սովխոզներում կառուցվել է մի քանի հազար լճակ ու ջրամբար։

Այս տարվա օգոստոսին կարևոր որոշում ընդունվեց 4.300 հազար հեկտարից ավելի տարածությունների վրա ոռոգման նոր սիստեմի անցնելու մասին։ Նախատեսելով ժամանակավոր ոռոգման առուներ կառուցել մշտականների փոխարեն, որոնք դժվարացնում էին հողագործության ժամանակակից մեքենայական տեխնիկայի կիրառումը, ոռոգման նոր սիստեմը հնարավորություն կտա ավելացնել ջրովի հողամասերի չափերը և ոռոգվող հողերում զգալիորեն բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։

Ընթացիկ տարում պարտիայի և կառավարության ջանքերը ուղղված էին գյուղատնտեսության բնագավառում կենտրոնական խնդրի լուծմանը՝ անասնաբուծությունը ամեն կերպ զարգացնելուն։ Կատարելով հանրային կոլխոզային ու սովխոզային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանը, կոլխոզները և սովխոզները հասել են անասունների գլխաքանակի լուրջ ավելացման և բարձրացրել են նրանց մթերատվությունը։

Մեր անասնաբուծությունը պատերազմի ժամանակ խիստ տուժեց։ Երկրի կարևորագույն գյուղատնտեսական շրջաններում՝ Ուկրաինայում, Հյուսիսային Կովկասում, Բելոռուսիայում, Կենտրոնական-սևահողային մարզերում անասունների գլխաքանակը, բացի դեպի արևելք էվակուացված ու բնակչության թաքցրած փոքր մասից, լիովին ոչնչացվեց։ Պատերազմի ժամանակ



անասնաբուծությունը տուժեց նաև երկրի այլ շրջաններում։ Չնայած այդ բանին, ներկայումս հանրային մթերատու անասնաբուծության նախապատերազմյան մակարդակը ոչ միայն լիովին վերականգնվել է, այլև այդ մակարդակը զգալի չափերով գերազանցվել է։ Կոլխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ներկայումս 38 տոկոսով ավելի է, քան մինչև պատերազմը, ոչխարներինն ու այծերինը՝ 65 տոկոսով, խոզերինը՝ 55 տոկոսով։ Կոլխոզները և սովխոզները հասել են տոհմային անասունների գլխաքանակի զգալի ավելացման։

Կոլխոզներում ու սովխոզներում խոշոր միջոցառումներ են իրագործվում անասնապահական բարեկարգ շենքեր կառուցելու և անասնաբուծության համար կերային բազա ստեղծելու ուղղությամբ՝ յուրացվում են կերային հատուկ ցանքաշրջանառություններ, ընդլայնվում է խոտացանությունը, ավելացվում սիլոսային կուլտուրաների և կերային արմատապտուղների արտադրությունը, արտադրության մեջ արմատավորվում են բարձր բերքատու կերային նոր կուլտուրաներ՝ սուդանկա, սորգո և այլն։

Հացահատիկային ու տեխնիկական կուլտուրաների արտադրության ավելացումը և անասնաբուծության արտադրանքի աճը հումքային կայուն բազա են ստեղծում թեթև և սննդի արդյունաբերության հետագա վերելքի համար։

Պարտիան և Կառավարությունը մեծ օգնություն են ցույց տալիս կոլխոզներին, սովխոզներին և մեքենատրակտորային կայաններին։ Գյուղատնտեսությունը զինվում է մեծ քանակությամբ բազմազան մեքենայական տեխնիկայով։ Մեր տրակտորային գործարանները և գյուղատնտեսական մեքենաշինության գործարանները պատերազմի ժամանակ ավերվել էին. այժմ նրանք բոլորը վերականգնվել և նոր կառուցված գործարանների հետ միասին ընթացիկ տարում գյուղատնտեսությանը

  

տալիս են տրակտորներ փոխադրած 15 ուժային՝ 4 անգամ ավելի, կոմբայններ՝ 3,8 անգամ, տրակտորի գութաններ՝ 4 անգամ, տրակտորային ցանիչներ՝ համարյա 6 անգամ, տրակտորային կուլտիվատորներ՝ ավելի քան 3 անգամ, քան 1940 թվականին։

Քիմիական արդյունաբերությունը գյուղատնտեսությանն ավելի և ավելի մեծ չափերով է մատակարարում հանքային պարարտանյութեր։ Ընթացիկ տարում գյուղատնտեսությունը ստանում է կոքսային, կալիումի և ազոտային պարարտանյութեր համարյա 2 անգամ ավելի, քան 1940 թվականին։

Առաջավոր տեխնիկայով զինված խոշոր կոլեկտիվ տնտեսություն վարելը պահանջում է իմանալ կոլխոզային արտադրության էկոնոմիկան, իմանալ ագրոտեխնիկայի ու մեքենայացման հիմունքները։ Կոլխոզնիկներից առաջ են քաշվել գյուղատնտեսության հիանալի կազմակերպիչներ, ղեկավարներ ու վարպետներ։ Բայց դրանով չի կարելի հանգստանալ։ Ուստի Պարտիան և Կառավարությունը դնում են կոլխոզային կադրերի հետագա ամրապնդման, կոլխոզային արտադրության մեջ և մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի պրակտիկայում գիտության նվաճումների ու գյուղատնտեսության առաջավոր փորձի արմատավորման խնդիրը։

Ժողովրդական տնտեսության վերելքը ուղեկցվում է ազգային եկամտի ավելացումով և մեր ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի հետագա աճով։

Կապիտալիստական երկրներում աշխատավորների կողմից ստեղծվող ազգային եկամտի առյուծի բաժինը յուրացնում են շահագործող դասակարգերը։ Տնտեսության սովետական սոցիալիստական սիստեմում եկամուտը հասնում է աշխատավորներին և բաշխվում է ոչ թե շահագործող դասակարգերի հարստացման շահերի օգտին, այլ բանվորների, գյուղացիների և ինտելիգեն-



ցիայի նյութական վիճակի սիստեմատիկ բարձրացման և սոցիալիստական արտադրության ընդլայնման շահերի օգտին։ Այդ պատճառով ազգային եկամտի աճը սովետական երկրում աշխատավոր մասսաների նյութական բարեկեցության աճի առավել ընդհանրացնող ու փայլուն ցուցանիշն է։

Հնգամյա պլանով սահմանված էր, որ ազգային եկամտի ծավալը 1950 թվականին պետք է նախապատերազմյան մակարդակը գերազանցի 38 տոկոսով։ Արդեն 1949 թվականին Սովետական Միության ազգային եկամուտը համարյա հասավ այդ մակարդակին, իսկ 1950 թվականին ազգային եկամուտը համադրական գներով նախապատերազմյան մակարդակը կգերազանցի ավելի քան 60 տոկոսով, այսինքն զգալիորեն ավելի, քան նախատեսված է հնգամյա պլանով։

Սովետական կառավարությունը, ինչպես հայտնի է, իրագործեց դրամական ռեֆորմ և 1950 թվականին կատարեց մասսայական սպառման ապրանքների մանրածախ գների հաշվով երրորդ իջեցումը։ Դա հանգեցրեց սովետական ռուբլու է՛լ ավելի կայունացմանը, նրա գնողունակության բարձրացմանը։ Բանվորների և ծառայողների եկամուտները, մեկ աշխատողի հաշվով, դեռևս 1949 թվականին, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, համադրական գներով ավելացան 24 տոկոսով։ Գյուղացիների եկամուտները համապատասխանորեն ավելացան ավելի քան 30 տոկոսով։ Ընթացիկ տարում տեղի է ունենում բանվորների ու ծառայողների ռեալ աշխատավարձի հետագա աճ և գյուղացիների եկամուտների ավելացում։

Մեր երկրում, ինչպես հայտնի է, չկա գործազրկություն։ Բանվորների ու ծառայողների թիվը ժողովրդական տնտեսության մեջ անընդհատ աճում է և ներկայումս նախապատերազմյան թվից գերազանցում է 22 տոկոսով։

Աշխատավորների նյութական վիճակի բարելա-

վումն իր արտահայտությունն է գտնում բնակչության գնողունակության աճի և առևտրի շրջանառության ավելացման մեջ։ Ընթացիկ տարում մենք հնարավորություն ունեցանք բնակչությանը վաճառելու համար ուղարկել պետական և կոոպերատիվ խանութները, չհաշված տեղական ռեսուրսները, միս ու մսամթերքներ՝ 35 տոկոսով, ձուկ՝ 53 տոկոսով, յուղ և այլ ճարպեղեն՝ 60 տոկոսով, շաքար և հրուշակեղեն՝ ավելի քան 30 տոկոսով, բամբակեղեն, բրդեղեն, մետաքսի ու վուշի գործվածքներ՝ 38 տոկոսով, կոշկեղեն՝ 35 տոկոսով, գուլպաներ՝ 37 տոկոսով, օճառ՝ 31 տոկոսով ավելի, քան պատերազմից առաջ։

Ժողովրդական սպառումը ներկայումս զգալիորեն գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։

Պարտիան և կառավարությունը առաջնահերթ կարևորություն ունեցող գործ են համարում երկրի բնակարանային ֆոնդի մեծ չափով ավելացումը և, մասնավորապես, անհատական բնակարանային շինարարության գործում բանվորներին, գյուղացիներին ու ինտելիգենցիային օգնություն ցույց տալը։ Հետպատերազմյան հնգամյակի 4 տարվա և 10 ամսվա ընթացքում վերականգնվել և կառուցվել են մոտ 90 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակարաններ։ Գյուղական վայրերում այդ նույն ժամանակի ընթացքում վերականգնվել և կառուցվել է ավելի քան 2,5 միլիոն բնակելի տուն։ Այս թվերը խոսում են մեր երկրում բնակարանային շինարարության զգալի ծավալի մասին։ Սակայն ամենուրեք չէ, որ բնակարանային շինարարության պլանները կատարվում են լրիվ։ Բնակելի տները քաղաքներում ու գյուղերում կառուցվում են դանդաղ ու դեռևս թանկ։

Կառավարությունը մեծ միջոցներ է ծախսում սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար։ Հետպատերազմյան տարիներին մեր երկրում վերականգնվել ու կառուցվել են հազարավոր նոր դպրոցներ,



դրադարաններ, մանկական հիմնարկներ ու մեծ քանակությամբ հիվանդանոցներ, սանատորիաներ, հանգստյան տներ, ակումբներ, թատրոններ և կինոներ։

Տարրական, յոթնամյա ու միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և այլ միջնակարգ ուսումնական հաստատություններում սովորում է 37 միլիոն մարդ։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում է 1 միլիոն 230 հազար ուսանող, որ ավելի քան 400 հազարով գերազանցում է նրանց նախապատերազմյան թիվը։

Հաջողությամբ զարգանում են սովետական գրականությունն ու արվեստը, որոնք մեզ մոտ ծառայում են ժողովրդի շահերին և սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության կարևոր միջոց են հանդիսանում։

Աճել է գիտա-հետազոտական հիմնարկների ցանցը։ Նոր խոշոր քայլեր են արվել լուծելու ընկեր Ստալինի կողմից սովետական գիտնականների առաջ դրված խնդիրը՝ «մոտ ժամանակներս ոչ միայն հասնել, այլև անցնել մեր երկրի սահմաններից դուրս գիտության ունեցած նվաճումներից»։ Ատոմային էներգիայի գաղտնիքը բացահայտելուց անմիջապես հետո մեր գիտնականները բազմաթիվ այլ խոշոր աշխատանքներով ու հայտնագործություններով նպաստեցին տեխնիկական պրոգրեսին, մեր ժողովրդա-տնտեսական պլանների կատարմանն ու գերակատարմանը։

Լեզվաբանության և ֆիզիոլոգիայի հարցերի շուրջը այս տարի անցկացված ստեղծագործական դիսկուսիաները առաջ մղեցին մեր սովետական գիտության զարգացումը։

Բացառիկ կարևոր նշանակություն ունեցան ընկեր Ստալինի ելույթները լեզվաբանության հարցերի վերաբերյալ դիսկուսիայում, որոնք ապահովեցին ճշտակի

վումն իր արտահայտությունն է գտնում բնակչության գնողունակության աճի և առևտրի շրջանառության ավելացման մեջ։ Ընթացիկ տարում մենք հնարավորություն ունեցանք բնակչությանը վաճառելու համար ուղարկել պետական և կոոպերատիվ խանութները, չհաշված տեղական ռեսուրսները, միս ու մսամթերքներ՝ 35 տոկոսով, ձուկ՝ 53 տոկոսով, յուղ և այլ ճարպեղեն՝ 60 տոկոսով, շաքար և հրուշակեղեն՝ ավելի քան 30 տոկոսով, բամբակեղեն, բրդեղեն, մետաքսի ու վուշի գործվածքներ՝ 38 տոկոսով, կոշկեղեն՝ 35 տոկոսով, գուլպաներ՝ 37 տոկոսով, օճառ՝ 31 տոկոսով ավելի, քան պատերազմից առաջ։

Ժողովրդական սպառումը ներկայումս զգալիորեն գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։

Պարտիան և կառավարությունը առաջնահերթ կարևորություն ունեցող գործ են համարում երկրի բնակարանային ֆոնդի մեծ չափով ավելացումը և, մասնավորապես, անհատական բնակարանային շինարարության գործում բանվորներին, գյուղացիներին ու ինտելիգենցիային օգնություն ցույց տալը։ Հետպատերազմյան հնգամյակի 4 տարվա և 10 ամսվա ընթացքում վերականգնվել և կառուցվել են մոտ 90 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակարաններ։ Գյուղական վայրերում այդ նույն ժամանակի ընթացքում վերականգնվել և կառուցվել է ավելի քան 2,5 միլիոն բնակելի տուն։ Այս թվերը խոսում են մեր երկրում բնակարանային շինարարության զգալի ծավալի մասին։ Սակայն ամենուրեք չէ, որ բնակարանային շինարարության պլանները կատարվում են լրիվ։ Բնակելի տները քաղաքներում ու գյուղերում կառուցվում են դանդաղ ու ղեռևս թանկ։

Կառավարությունը մեծ միջոցներ է ծախսում սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար։ Հետպատերազմյան տարիներին մեր երկրում վերականգնվել ու կառուցվել են հազարավոր նոր դպրոցներ,



գրադարաններ, մանկական հիմնարկներ ու մեծ քանակությամբ հիվանդանոցներ, սանատորիաներ, հանգստյան տներ, ակումբներ, թատրոններ և կինոներ։

Տարրական, յոթնամյա ու միջնակարգ դպրոցներում, տեխնիկումներում և այլ միջնակարգ ուսումնական հաստատություններում սովորում է 37 միլիոն մարդ։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում է 1 միլիոն 230 հազար ուսանող, որ ավելի քան 400 հազարով գերազանցում է նրանց նախապատերազմյան թվից։

Հաջողությամբ զարգանում են սովետական գրականությունն ու արվեստը, որոնք մեզ մոտ ծառայում են ժողովրդի շահերին և սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության կարևոր միջոց են հանդիսանում։

Աճել է գիտա-հետազոտական հիմնարկների ցանցը։ Նոր խոշոր քայլեր են արվել լուծելու ընկեր Ստալինի կողմից սովետական գիտնականների առաջ դրված խնդիրը՝ «մոտ ժամանակներս ոչ միայն հասնել, այլև անցնել մեր երկրի սահմաններից դուրս գիտության ունեցած նվաճումներից»։ Ատոմային էներգիայի գաղտնիքը բացահայտելուց անմիջապես հետո մեր գիտնականները բազմաթիվ այլ խոշոր աշխատանքներով ու հայտնագործություններով նպաստեցին տեխնիկական պրոգրեսին, մեր ժողովրդա-տնտեսական պլանների կատարմանն ու գերակատարմանը։

Լեզվաբանության և ֆիզիոլոգիայի հարցերի շուրջը այս տարի անցկացված ստեղծագործական դիսկուսիաները առաջ մղեցին մեր սովետական գիտության զարգացումը։

Բացառիկ կարևոր նշանակություն ունեցան ընկեր Ստալինի երկերը լեզվաբանության հարցերի վերաբերյալ դիսկուսիայում, որոնք ապահովեցին շեշտակի

թեկուզ ամենից առաջ գիտության այդ ճյուղում։ Ցույց տալով, որ գիտությունը չի կարող զարգանալ ու առաջադիմել առանց կարծիքների պայքարի, առանց քննադատության ազատության, առանց հնացած ֆորմուլաներն ու հետևությունները նորով փոխարինելու, ընկեր Ստալինը ամբողջ սովետական գիտական մտքի համար լայն ասպարեզ բացեց մեր պետության առջև կանգնած նոր խնդիրների լուծման գործում։

Խոսելով տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում մեր հաջողությունների մասին, չի կարելի չխոսել մեր փառապանծ Զինված Ուժերի մասին, մեր Բանակի, Ավիացիայի և Ռազմա-Ծովային Նավատորմի մասին։ Պատվով կատարելով իրենց զինվորական պարտքը, նրանք հուսալի կերպով կանգնած են խաղաղության և մեր Հայրենիքի անվտանգության պաշտպանության դիրքերում։ (Երկարատև ծափահարություններ)։

Ընկեր Ստալինը սովորեցնում է, որ կոմունիզմի ժամանակ պլանով կազմակերպված ժողովրդական տնտեսությունը կհենվի բարձրագույն տեխնիկայի վրա՝ ինչպես ինդուստրիայի բնագավառում, այնպես էլ գյուղատնտեսության բնագավառում։ Հետևապես մեզ անհրաժեշտ է կազմակերպել սովետական էկոնոմիկայի հետագա նոր վերելքը, էլ ավելի բարձրացնել տնտեսության բոլոր ճյուղերի տեխնիկական զինվածությունը և հասնել երկրի արտադրողական ուժերի հետագա զարգացմանը։

Սովետական ժողովրդի առջև կանգնած այս խնդիրների լույսի տակ հսկայական նշանակություն ունեն Կառավարության որոշումները Վոլգայի վրա Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայաններ, Ամու-Դարյա—Կրասնովոդսկ Գլխավոր Թուրքմենական ջրանցք, Դնեպրի վրա Կախովկայի հիդրոէլեկտրակայան, Հարավ-



Ուկրաինական և Հյուսիս-Ղրիմյան ջրանցքներ կառուցելու մասին։ Իրենց մասշտաբներով, տեխնիկական մտահղացմամբ և իրագործման ժամկետով այդ կառուցումները հանդիսանում են կոմունիզմի իսկական կառուցումներ։ Նրանցից յուրաքանչյուրը իր մեջ պարունակում է հիդրոէլեկտրակայաններ, ամբարտակներ, ջրանցքներ, ջրամբարներ, ոռոգման սիստեմներ։ Նոր կառուցումները իրենցից ներկայացնում են տեխնիկական կառուցվածքների բարդ կոմպլեքս։ Այդպիսի կառուցվածքների շինարարությունը հնարավոր է միայն մեր երկրում, պլանային սոցիալիստական տնտեսության պայմաններում։

Նոր ստեղծվող չորս հիդրոէլեկտրակայանները կունենան ավելի քան չորս միլիոն կիլովատ ընդհանուր սահմանված կարողություն և միջին ջրառատության դեպքում տարեկան կտան 22 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, այսինքն ավելի քան 11 անգամ շատ էներգիայի այն քանակից, որ 1913 թվականին արտադրում էին ցարական Ռուսաստանի բոլոր էլեկտրակայանները։

Կույբիշևյան և Ստալինգրադյան հիդրոէլեկտրակայանները հնարավորություն կտան լրիվ չափով էլեկտրաէներգիայով ապահովել Մոսկվան ու ավելի արագ տեմպերով զարգացնել Պովոլժիեի և Կենտրոնական-սևահողային մարզերի շրջանների էկոնոմիկան, իսկ Գլխավոր Թուրքմենական ջրանցքի հիդրոէլեկտրակայանները և Կախովկայի հիդրոէլեկտրակայանը՝ Թուրքմենիայի մերձկասպյան շրջանների և Դնեպրի ստորին շրջանների էկոնոմիկան։ Երկիրը հնարավորություն կստանա շարք մտցնելու նոր արդյունաբերական ձեռնարկություններ և առաջավոր տեխնիկան արմատավորել գործող ձեռնարկություններում։

Զավոլժիեի, Հարավային Ուկրաինայի շրջանների և Ղրիմի հյուսիսային շրջանների, Մերձկասպյան ու Մի-

չին Ասիայի անապատային և կիսաանապատային շըրջանների ոռոգումն ու ջրովի դարձնելը երկրին լրացուցիչ կերպով կտա միլիոնավոր փութ ցորեն, բրինձ, բամբակ և տեխնիկական այլ կուլտուրաներ: Ոռոգվող հողերում մեծ զարգացում կստանա անասնապահությունը: Նոր կայանների էլեկտրական էներգիան լայն կիրառում կգտնի արդյունաբերության և գյուղատնտեսական արտադրության մեջ:

Վոլգայի, Ամու-Դարյայի և Դնեպրի կառուցումների մասին Կառավարության որոշումները մեր երկրում ընդունվեցին մեծ խանդավառությամբ: Արդյունաբերական շատ ձեռնարկությունների բանվորներ պարտավորություններ են ստանձնում արագ և լավ կատարել նոր կառուցումների պատվերները: Սովետական գիտնականներն ու ինժեներա-տեխնիկական աշխատողները իրենց ստեղծագործական ջանքերն ուղղում են նոր շինարարության տեխնիկական պրոբլեմների լուծմանը: Պովոլժյեի, Թուրքմենիայի, Ուկրաինայի և Ղրիմի կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները պարտավորություններ են ստանձնում իրենց աշխատանքային մասնակցությամբ արագացնելու շինարարական աշխատանքների իրագործումը:

Սովետական հասարակության զարգացման ընթացքում գնալով ավելի կարևոր նշանակություն է ստանում մեր կադրերի գաղափարական-տեսական կոփվածությունը: Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պայմանները պարտավորեցնում են մեզ բարձրագույն աստիճանի հասցնել ամբողջ գաղափարական աշխատանքը, հասնել աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործի հետագա բարելավմանը:

Կոմունիզմը չի կարող կառուցվել առանց մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի մնացուկները լիովին հաղթահարելու: Ահա թե ինչու պետք է ուժեղացվի պայքարը աշխատանքի և սոցիալիստական սե-



փականության նկատմամբ, պետական շահերի պահպանման նկատմամբ ոչ կոմունիստական վերաբերմունքի զանազան դրսևորումների դեմ: Հարկավոր է վճռականորեն արմատախիլ անել գիտության, գրականության և արվեստի ասպարեզում եղած բուրժուական ազդեցությունները, հաստատակամորեն կատարելագործել բոլոր մասնագիտությունների մեր կադրերի մարքսիստական-լենինյան դաստիարակության ուղղությամբ կատարվող աշխատանքը, օգնել նրանց տիրապետելու հասարակության զարգացման օրենքների վերաբերյալ գիտությանը:

Մեր կոմունիստական պարտիան կոչ է անում չհանգստանալ ձեռք բերածով և չգայթակղվել հաջողություններից: Սովետական մարդկանց համար վայել չէր լինի չնկատել աշխատանքի թերությունները և միջոցներ ձեռք չառնել դրանց վերացման համար:

Չի կարելի, օրինակ, անցնել այնպիսի անհանդուրժելի երևույթի կողքով, ինչպիսին պետական պլանների պարտադիր կատարման վերաբերյալ օրենքի խախտումն է: Մինչև այժմ արդյունաբերության մի շարք ճյուղերում առանձին ձեռնարկություններ սիստեմատիկաբար չեն կատարում իրենց համար սահմանված պլանները: Արդյունաբերության այդ ճյուղերի ղեկավարները իրենց հանգստացնում են նրանով, որ պլանը չկատարող ձեռնարկությունների վատ աշխատանքը լրացվի առաջավոր ձեռնարկությունների կողմից պլանները գերակատարելու հաշվին:

Դա սխալ, ոչ սովետական մոտեցում է պետական պլանների կատարմանը: Որոշ ձեռնարկությունների վատ աշխատանքը ուրիշների լավ աշխատանքի հաշվին սքողելու և կոծկելու այդպիսի պրակտիկան ընդհանուր ոչինչ չունի տնտեսության ղեկավարման սովետական մեթոդի հետ: Նման մոտեցումը վայել չէ սոցիալիստական տնտեսության աշխատողներին: Այդպես կարող են

դատել և գործել միայն բուրժուական կոմբինատորները: Պետական պլանը օրենք է: Յուրաքանչյուր ձեռնարկություն պարտավոր է կատարել իր համար սահմանված առաջադրանքը: Այս պահանջից պետք է ելնեն ոչ միայն արդյունաբերության, այլև մեր սոցիալիստական շինարարության մյուս բոլոր ճյուղերի աշխատողները:

Ոչ պակաս կարևոր է նշել նաև կապիտալ շինարարության ասպարեզում եղած լուրջ թերությունները: Դրանց վրա մեր ուշադրությունը հրավիրեց ընկեր Ստալինը: Այն ժամանակ, երբ արդյունաբերական արտադրության զարգացումը ուղեկցվում է արտադրանքի ինքնարժեքի իջեցմամբ և այդ հիման վրա տեղի է ունենում ապրանքների գների իջեցում ու սովետական ռուբլու կայունացում, շինարարության արժեքը, չնայած կապիտալ աշխատանքների ծավալի զգալի աճմանը, չի իջնում և մնում է չափազանց բարձր: Շինարարության նախագծման ասպարեզում թույլ են տրվում մեծ շռայլումներ, որոնք թանկացնում են շինարարության արժեքը: Կապիտալ շինարարության պլանավորման ասպարեզում եղած լուրջ թերությունների հետևանքով նյութական և դրամական միջոցները փոշիանում են բազմաթիվ կառուցումների վրա, որը առաջ է բերում շինարարության ժամկետների երկարաձգում, ուշացնում է նոր կարողությունների գործարկումը և մեծացնում չավարտված շինարարության չափերը: Մեր կապիտալ շինարարության այժմյան հսկայական թափի պայմաններում այդ հարցը ձեռք է բերում պետական մեծ նշանակություն:

Մեր շինարարական կազմակերպությունների ղեկավարները պարտավոր են վերջ տալ շինարարության արժեքի իջեցման վերաբերյալ կառավարության առաջադրանքների խախտումներին, ապահովել շինարարության ժամկետների վճռական արագացումը, բարելավել



իրենց աշխատանքը և լիկվիդացնել մեր ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերից ետ մնալը:

Մեր աշխատանքում եղած թերությունների դեմ պայքարելու հուսալի ու փորձված միջոց է հանդիսանում բոլշևիկյան քննադատությունն ու ինքնաքննադատությունը: Պարտիան սովորեցնում է, որ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, որ հանդիսանում է սովետական հասարակության շարժիչ ուժերից մեկը, օգնում է վճռականորեն վերացնելու հինը, իր դարն ապրածը, և ուղի հարթելու նորի, առաջավորի, պրոգրեսիվի համար: Այդ իսկ պատճառով քննադատությունից ու ինքնաքննադատությունից պետք է օգտվել ոչ թե դեպքից դեպք, այլ մշտապես: Քննադատությունն ու ինքնաքննադատությունը պետք է լինեն անընդհատ գործող զենք, ուղղված մեր ամբողջ աշխատանքի բարելավմանը:

Քաղաքական դաստիարակության, տնտեսական և կուլտուրական շինարարության ասպարեզում եղած թերությունների վերացումը հնարավորություն կտա բացահայտել սոցիալիստական արտադրության աճման նոր աղբյուրներ և դրանով իսկ արագացնել մեր առաջընթացը կոմունիզմի ուղիով:

## II

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԱՄՐԱՊՆԴՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐԸ

Իրագործելով ժողովրդա-տնտեսական շինարարության խնդիրները, Սովետական Միությունը հաստատակամորեն պայքարում է խաղաղության, բոլոր երկրների ժողովուրդների միջև բարեկամության ու համագործակցության համար:

Սովետական Միության հետ միասին ձեռք-ձեռքի տված խաղաղության և ժողովուրդների բարեկամության համար պայքար են մղում ժողովրդական դեմոկրատիայի երկրները՝ Ալբանիան, Բուլղարիան, Հունգարիան, Լեհաստանը, Ռումինիան, Չեխոսլովակիան։

Խաղաղության գործի համար Չինաստանի կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, ընկեր Մաո Ցզե-դունի գլխավորությամբ ակտիվորեն պայքարում է չին մեծ ժողովուրդը։ (Երկարատև ծափահարություններ):

Խաղաղության ճակատում ամուր կանգնած է Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան։

Խաղաղության գործի համար, իր ժողովրդի ազատության և անկախության համար ազատագրական պատերազմ է մղում հերոսական կորեական ժողովուրդը։ (Երկարատև ծափահարություններ):

Այդ բոլոր ժողովուրդները ներկայացնում են խաղաղության, սոցիալիզմի և դեմոկրատիայի ճակատը։

Ընկեր Ստալինը բազմիցս նշել է, որ տնտեսական սիստեմների և իդեոլոգիաների տարբերությունը չի բացառում համագործակցությունն ու նորմալ հարաբերությունները Սովետական Միության և կապիտալիստական երկրների միջև, մասնավորապես, Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների միջև։

«Համագործակցության համար,— ասում է ընկեր Ստալինը,— չի պահանջվում, որպեսզի ժողովուրդներն ունենան միատեսակ սիստեմ։ Հարկավոր է հարգել ժողովուրդների կողմից հավանություն ստացած սիստեմները»։ Դրա հետ միասին ընկեր Ստալինը նշում է, որ «պետք է տարբերություն դնել համագործակցության հնարավորության և համագործակցելու ցանկության միջև։ Միշտ գոյություն ունի համագործակցելու հնարավո-



րություն, բայց միշտ չէ, որ կա համագործակցելու ցանկություն»։

Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա ամբողջ աշխարհին հայտնի են մեր կառավարության բազմաթիվ ջանքերը և գործնական քայլերը՝ ուղղված խաղաղության գործի և ժողովուրդների համագործակցության ամրապնդմանը։

Սոցիալիզմի և դեմոկրատիայի ճակատին, խաղաղության ճակատին հակադրված է իմպերիալիզմի ճակատը, որը գլխավորում են Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարող շրջանները, և որը վարում է նոր պատերազմի հրահրման քաղաքականություն, թույլերի նըկատմամբ ուժեղ երկրների տիրապետության քաղաքականություն։

Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը համաշխարհային շուկաներում ամերիկյան իմպերիալիստների գլխավոր մրցակիցներն էին Գերմանիան և Ճապոնիան։ Պատերազմում այդ երկրների ջախջախումից հետո ԱՄՆ-ի իմպերիալիստները ձգտում են օգտագործել ստեղծված իրադրությունը հումքի աղբյուրները և վաճառահանման շուկաները զավթելու համար։ Բայց դրանով նրանց նպատակները չեն սահմանափակվում։ Ամերիկյան իմպերիալիստները հույս ունեն, որ նոր, երրորդ պատերազմը պետք է հանգեցնի Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների խորտակմանը, մնացած բոլոր երկրներում բանվորական և ազգային-ազատագրական շարժման ճնշմանը, ԱՄՆ-ի իմպերիալիստների համաշխարհային տիրապետության հաստատմանը։ Հանուն այդ բոլորի իմպերիալիզմի ճակատում ուժեղանում է սպառազինությունների մրցավազքը, ուռճացվում են ռազմական ծախսերը, ավելացվում է զինված ուժերի թիվը, ոչըն-

չացվում են դեմոկրատական ազատությունների մնացորդները և հալածվում են պրոգրեսիվ կազմակերպությունները։ Այդ նպատակներին հասնելու համար ամերիկյան իմպերիալիստները հուսով են որպես թնդանոթի միս օգտագործել իրենցից կախում ունեցող երկրների բանակները։ Անգլիայի և Ֆրանսիայի կառավարող շրջանները, որոնք մի ժամանակ ինքնուրույն արտաքին քաղաքականություն էին իրականացնում, այժմ ի վնաս իրենց ազգային շահերի միջազգային բոլոր հիմնական հարցերում հաճոյակատարությամբ ենթարկվում են ԱՄՆ-ի իմպերիալիստների թելադրանքին։

Վերջին ժամանակներս Ամերիկայի Միացյալ Նահանգների իմպերիալիստները ագրեսիայի նախապատրաստության քաղաքականությունից անցել են ագրեսիայի ուղղակի ակտերի։ Այդ քաղաքականության առավել բացահայտ արտահայտությունն է հանդիսանում ԱՄՆ-ի զինված ինտերվենցիան Կորեայում։

Սովետական կառավարությունը, հավատարիմ խաղաղության իր անշեղ քաղաքականությանը, Կորեայում իրադարձությունների սկզբից ևեթ պնդել է, որ կոնֆլիկտը կարգավորվի խաղաղ միջոցներով։ Այդ նպատակով Սովետական կառավարությունը առաջարկեց անհապաղ դադարեցնել պատերազմական գործողությունները Կորեայում և միաժամանակ այնտեղից դուրս բերել բոլոր օտարերկրյա զորքերը, դրանով իսկ կորեական ժողովրդին հնարավորություն տալ իր ներքին գործերը վճռելու առանց օտարերկրյա միջամտության։

Սակայն բացահայտ ագրեսիայի ուղու վրա կանգնած ամերիկյան կառավարությունը մերժեց այն բոլոր առաջարկները, որոնք նպատակ ունեին խաղաղ կարգավորել կորեական հարցը։ Այդ օրինակով բոլոր երկրների ժողովուրդները ակնառու կերպով համոզվե-



ցին, թե ով է կողմնակից խաղաղության, և ով՝ նոր
պատերազմի։

Այն բոլոր անհաջողություններից ու ծանր պարտու-
թյուններից հետո, որ կրեց ամերիկյան ռազմական
հրամանատարությունը Կորեայում ազատասեր կորեա-
կան ժողովրդի դեմ մղած պայքարում, ամերիկացիները
Կորեայում պատերազմ մղելու համար կենտրոնացրին
Հեռավոր Արևելքում ունեցած իրենց գրեթե բոլոր զին-
ված ուժերը։ Հույսը չդնելով միայն իրենց ուժերի վրա,
ամերիկացիները գործողությունների մեջ ներգրավեցին
Անգլիայի և այլ երկրների զորքեր։ Միմիայն գործելով
այդպիսի խոշոր ուժերով, որոնք մի քանի անգամ գե-
րազանցում էին Կորեական Ժողովրդական բանակի ու-
ժերին, ինտերվենտներին հաջողվեց հասնել ռազմական
որոշ հաջողությունների։

Կորեական ժողովուրդը ռազմական մեծ հաջողու-
թյուններից հետո այժմ ապրում է ռազմական անհաջո-
ղություններ, բայց դրանք չեն ընկճել կորեական ժո-
ղովրդի պայքարելու կամքը։ Անհաջողություններ լինում
են ամեն մի պատերազմում։ Մի ժամանակ մեր Սովե-
տական պետությունն էլ օտարերկրյա ռազմական ին-
տերվենցիայի և քաղաքացիական պատերազմի տարի-
ներին հսկայական դժվարություններ էր ապրում, սա-
կայն ինտերվենտները ջախջախվեցին և դուրս վռնդվե-
ցին։ (Երկարատև ծափահարություններ)։

Ամերիկյան ինտերվենտների դեմ մղած իր հերո-
սական պայքարով կորեական ժողովուրդը նվաճեց ամ-
բողջ աշխարհի խաղաղասեր ժողովուրդների համակ-
րանքը։ (Ծափահարություններ)։ Կորեան դարձավ
ճնշված ու կախյալ երկրների ազատագրական շարժ-
ման դրոշը։ (Ծափահարություններ)։ Արտահայտելով
պատերազմի սարսափները կրած ժողովուրդների կամ-

քը, մեծ տերությունները ֆաշիստական Գերմանիայի և իմպերիալիստական Ճապոնիայի դեմ հաղթանակ տանելուց հետո սահմանեցին պետությունների միջև փոխհարաբերությունների համաձայնեցված սիստեմ, որը երաշխավորում էր խաղաղությունը և ժողովուրդների անվտանգությունը։ Այս սիստեմի հիմքը հանդիսանում էին Պոտսդամի համաձայնագիրը, ինչպես նաև Միավորված Ազգերի Կազմակերպության Կանոնադրությունը։ Սակայն անգլո-ամերիկյան իմպերիալիստները արդեն վաղուց են անցկացնում միջազգային համագործակցության այդ սիստեմը խորտակելու գիծը։ Շրջանցելով ՄԱԿ-ի Կանոնադրությունը և հակառակ այդ Կանոնադրության անգլո-ամերիկյան իմպերիալիստները ստեղծեցին ագրեսիվ Հյուսիս-ատլանտյան դաշինքը և ստեղծում են այլ ագրեսիվ ռազմական բլոկներ։

Անգլո-ամերիկյան կառավարող շրջանները վիժեցնում են Գերմանիայի հետ հաշտության պայմանագրի կնքումը և ձգտում են որքան կարելի է ավելի շատ ձգձգել Արևմտյան Գերմանիայի օկուպացիան։ Ամերիկայի Միացյալ Նահանգների, Մեծ Բրիտանիայի և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրների՝ այս տարվա սեպտեմբերին Նյու-Յորքում տեղի ունեցած խորհրդակցությունը որոշում ընդունեց Արևմտյան Գերմանիայում գերմանական բանակը վերստեղծելու, Արևմտյան Գերմանիայի վերառազմականացման ուղղությամբ գործնական միջոցառումների և նրա մարդկային ու նյութական ռեսուրսները իրենց շահերի համար օգտագործելու մասին, առանց հաշվի առնելու գերմանական ժողովրդի ազգային շահերը։

Ամերիկյան, անգլիական ու ֆրանսիական կառավարությունների կողմից կիրառվող Գերմանիան պառակտելու քաղաքականությունը, ի խախտումն Պոտսդա-



մի համաձայնագրի սկզբունքների, հասցրեց տնտեսական նորմալ կապերի խզմանը Գերմանիայի արևմտյան և արևելյան մարզերի միջև, Արևմտյան Գերմանիայում արդյունաբերության միայն այն ճյուղերի զարգացմանը, որոնք կապված են ռազմական արտադրության հետ։

Դրա լիակատար հակադրությունն է Սովետական կառավարության քաղաքականությունը, որը պահանջում է կենսագործել Պոտսդամի համաձայնագիրը, որ նախատեսում է ստեղծել միասնական անկախ խաղաղասեր դեմոկրատական Գերմանիա։ Լայնորեն հայտնի են Սովետական կառավարության առաջարկները Գերմանիայի հետ ամենաարագ կերպով հաշտության պայմանագիր կնքելու, օկուպացիոն զորքերը դուրս բերելու և համագերմանական կառավարություն ստեղծելու մասին։ Այդ առաջարկները նորից դրվեցին ՍՍՌՄ, Ալբանիայի, Բուլղարիայի, Չեխոսլովակիայի, Լեհաստանի, Ռումինիայի, Հունգարիայի և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի Արտաքին Գործերի Մինիստրների վերջերս հրապարակված Հայտարարության մեջ։

Սովետական Միությունը պահանջում է նաև կենսագործել Պոտսդամի դեկլարացիան, այսինքն ամենաարագ կերպով հաշտության պայմանագիր կնքել Ճապոնիայի հետ, Ճապոնիայից դուրս բերել օկուպացիոն զորքերը և վերացնել ճապոնական միլիտարիզմի վերածնման սպառնալիքը։

Ամերիկայի Միացյալ Նահանգները, ընդհակառակը, իրենց նպատակ են դնում երկարաձգել Ճապոնիայի օկուպացիան և Ճապոնիան դարձնել պլացդարմ Հեռավոր Արևելքում իրենց ագրեսիվ պլանները իրագործելու համար։ Օգտվելով օկուպացնող տերության դիրքից և խախտելով Ճապոնիայի ապառազմականացման ու դեմոկրատացման մասին համաձայնեցված ո-

բողումները. Ամերիկայի Միացյալ Նահանգները վերականգնում են ռազմա-ծովային բազաներ Ճապոնիայում, վերստեղծում են ճապոնական զինված ուժերը, հալածում են դեմոկրատական կազմակերպություններին և աջակցում են ճապոնական միլիտարիստների՝ իշխանության գլուխ անցնելուն։

Այսպիսով, խախտելով Գերմանիայի ու Ճապոնիայի հարցում իրենց ստանձնած պարտավորությունները, Ամերիկայի Միացյալ Նահանգների և Անգլիայի կառավարությունները վիժեցնում են հետպատերազմյան խաղաղ կարգավորումը, որի մեջ շահագրգռված են բոլոր երկրների ժողովուրդները։

Խաղաղության և միջազգային համագործակցության համար մղվող պայքարում Սովետական կառավարությունը պաշտպանում է այն բոլոր միջոցառումները, որոնց նպատակն է ամրապնդել Միավորված Ազգերի Կազմակերպությունը, որը կոչված է լինելու խաղաղության և միջազգային անվտանգության պահպանման լուրջ գործիք։

«Միջազգային այդ կազմակերպության ուժը,— նշել է ընկեր Ստալինը, —այն է, որ նա հենվում է պետությունների իրավահավասարության սկզբունքի վրա, այլ ոչ թե մեկի կողմից մյուսին տիրապետելու սկզբունքի վրա։ Եթե միավորված ազգերի Կազմակերպությանը հաջողվի այսուհետև ևս պահպանել իրավահավասարության սկզբունքը, ապա նա անպայման դրական մեծ դեր կխաղա ընդհանուր խաղաղությունը և անվտանգությունն ապահովելու գործում»։

Անգլո-ամերիկյան բլոկի ներկայացուցիչները սիստեմատիկաբար մերժում են Սովետական Միության առաջարկները, որոնց նպատակն է ամրապնդել Միավորված Ազգերի Կազմակերպությունը։ Ավելին, ամերիկյան կառավարությունը ձգտում է միջազգային այդ կազմա-



կերպությունը դարձնել ԱՄՆ-ի պետական դեպարտամենտի հասարակ հավելուկը, ամերիկյան ագրեսիվ պլանները քողարկող հիմնարկություն։ Դրանով իսկ Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարությունը ցույց է տալիս, որ նա չի ցանկանում որոնել դեպի միջազգային համագործակցությունը տանող ուղիներ և չի հարգում մյուս պետությունների սուվերեն իրավունքները, որ նա մտադիր է հրահրել նոր պատերազմ։

Իմպերիալիստները շատ ջանքեր են թափում, որպեսզի խեղաթյուրեն Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականությունը և այն ներկայացնեն որպես պրոպագանդա, որպես ինչ որ մեկին մոլորեցնելու փորձ։ Ի՞նչը կարող է լինել ավելի ուղղակի և ավելի պարզ, քան Սովետական կառավարության բազմիցս արած առաջարկները, որոնք ուղղված են նոր պատերազմի հրահրման դեմ և միջազգային համագործակցության ընդլայնմանը։

Հավատարիմ լինելով խաղաղության համար մղվող պայքարի իր քաղաքականությանը, Սովետական կառավարությունը Միավորված Ազգերի Կազմակերպության Գլխավոր Ասամբլեայի՝ այժմ տեղի ունեցող հինգերորդ սեսիայում առաջարկ մտցրեց ընդունել «Նոր պատերազմի սպառնալիքը վերացնելու և խաղաղությունն ու ժողովուրդների անվտանգությունն ամրապնդելու վերաբերյալ Դեկլարացիան»։ Այդ դեկլարացիայում Սովետական կառավարությունը կրկին առաջարկում է դատապարտել և արգելել նոր պատերազմի պրոպագանդան, արգելել ատոմային զենքի, որպես ագրեսիայի և մարդկանց մասսայական ոչնչացման զենքի, օգտագործումը, սահմանել միջազգային խիստ վերահսկողություն այդ արգելումը ճշտությամբ և անպայման իրագործելու նկատմամբ, հինգ մեծ տերությունների միջև կնքել խաղաղության ամրապնդման պակտ և մեկ տարվա ընթացքում նրանց զինված ուժերը կրճատել մեկ երրորդով, այն հաշվով, որպեսզի հետագայում ևս շարունակվի այդ կրճատումը։

Թվում էր, թե ամենահասարակ բանն է՝ վերցնել և ընդունել Սովետական կառավարության այդ խաղաղասիրական առաջարկները ու այդպիսով ստուգել սովետական առաջարկների անկեղծությունը։ Բայց պատերազմի հրձիգները, ՄԱԿ-ում ունենալով հնազանդ մեծամասնություն, գերադասեցին մերժել սովետական առաջարկները։ Իսկ դրանք մերժեցին, որովհետև սովետական առաջարկները վիժեցնում են պատերազմի հրձիգների գործը և նրանց ագրեսիվ պլանները։ Ավելին, այդ պարոնները սպառնալիքներ են գործի դնում Սովետական Միության հասցեին։

Արդեն ժամանակն է, որպեսզի այդ պարոնները հասկանան, որ սովետական ժողովուրդը չի պատկանում թույլ նյարդեր ունեցողների թվին (ծափահարություններ) և սպառնալիքներով նրան չի կարելի վախեցնել։ (Երկարատև ծափահարություններ): Պատմության փորձը ասում է, որ մեր խաղաղասիրական քաղաքականությունը թուլության նշան չէ։ Ժամանակն է, որպեսզի այդ պարոնները հասկանան, որ մեր ժողովուրդը ընդունակ է իրեն պաշտպանելու (երկարատև ծափահարություններ), իր Հայրենիքի շահերը պաշտպանելու, եթե հարկ լինի՝ զենքը ձեռքին։ (Բուռն, երկարատև ծափահարություններ):

Վարելով իրենց ագրեսիվ քաղաքականությունը, իմպերիալիստները քողարկվում են այն պնդումներով, որ իրենք իբր պայքարում են կոմունիզմի դեմ։ Այդ պրիոմը նոր չէ։ Հիտլերը և նրա գործակիցները նույնպես ջանում էին իրենց ագրեսիվ քաղաքականությունն արդարացնել՝ վկայակոչելով կոմունիստական վտանգը։ Թե ինչով վերջացան հիտլերականների այդ կեղծ մեքենայությունները, բոլորին հայտնի է։ Ըստ երևույթին, Հիտլերի դափնիները թույլ չեն տալիս քնել պատերազմի անգլո-ամերիկյան բլոկի հրձիգներին։



Բայց հասարակ մարդկանց այժմ դժվար է մոլորության մեջ գցել։ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների փորձով աշխատավորները տեսնում են, որ այնտեղ, ուր իշխանության գլուխ են կանգնում կոմունիստները, հաստատվում է իսկական դեմոկրատիա, վերանում է գործազրկությունը, արագ տեմպերով աճում է ժողովրդի բարեկեցությունն ու կուլտուրան, յուրաքանչյուր մարդու առաջ բացվում են ստեղծագործական աշխատանքի ամենալայն հնարավորություններ։

Ահա թե ինչու, չնայած կոմունիզմը «ոչնչացնելու» վերաբերյալ իմպերիալիստների բոլոր ջանքերին, կոմունիզմի կողմնակիցների թիվն աճում է։ Օրեցօր ուժեղանում է կոմունիստական պարտիաների ազդեցությունը, որոնք այժմ իրենց շարքերում, առանց Սովետական Միության, հաշվում են ավելի քան 18 միլիոն մարդ։ (Ծափահարություններ):

Կոմունիզմը և աշխատավոր ժողովուրդը անբաժան են։ Այդ իսկ պատճառով, ինչպես չի կարելի ոչնչացնել ժողովրդին, այնպես էլ չի կարելի ոչնչացնել կոմունիզմը։ (Ծափահարություններ): Ժողովուրդը կապիտալիստական հասարակության մեջ իր դիրքով անհաշտ թշնամի է իմպերիալիզմին, որը բերում է տառապանքներ և մասսայական ոչնչացում ավազակային պատերազմների դաշտերում։ Ժողովուրդները պատերազմ չեն ցանկանում և ավելի ու ավելի պարզորեն են գիտակցում, թե պատերազմի հրձիգները ինչպիսի սոսկալի անդունդի մեջ են փորձում գլորել նրանց։

Պատերազմի սպառնալիքի սրումը առաջ բերեց այն, որ աճեց ժողովուրդների վճռականությունը՝ կանխելու պատերազմը։ Ամբողջ աշխարհում ընդլայնվում և ամրապնդվում է խաղաղության կազմակերպված ու հզոր շարժումը, որը միավորում է բանվորներին, գյուղացիներին, ինտելիգենցիային, կանանց ու երիտասար-

դությանը, քաղաքական և կրոնական ամենատարբեր համոզմունքների տեր մարդկանց։ Այժմ ժողովուրդները պայքար են մղում ոչ միայն ատոմային զենքն արգելելու համար, այլև այն բանի համար, որպեսզի իրագործեն սպառազինության բոլոր տեսակների ընդհանուր կրճատումը, արգելեն պատերազմի պրոպագանդայի բոլոր ձևերը, դատապարտեն զինված ագրեսիան ու դրսից ժողովուրդների ներքին գործերին միջամտելը։

Սովետական ժողովուրդը կողմնակից է խաղաղության և վճռականապես պաշտպանում է խաղաղության գործը։ Արտահայտելով նրա կամքը, ՍՍՌՄ Գերագույն Սովետը ընթացիկ տարվա հունիսին պաշտպանեց խաղաղության կողմնակիցների Համաշխարհային կոնգրեսի Մշտական կոմիտեի Ստոկհոլմի Կոչը։ Այդ Կոչը ստորագրել են ավելի քան 115 միլիոն սովետական քաղաքացիներ՝ մեր Հայրենիքի ամբողջ չափահաս բնակչությունը, դրանով իսկ հայտարարելով, որ նա ցանկանում է խաղաղություն և կպայքարի կայուն խաղաղության համար։ Խաղաղության համար պայքարի են ելել ժողովրդի միլիոնավոր մասսաները մյուս երկրներում։ Ստոկհոլմի Կոչի օգտին քվեարկել ու նրա տակ իրենց ստորագրություններն են դրել Չինաստանում 204 միլիոն մարդ, Լեհաստանում, Չեխոսլովակիայում, Բուլղարիայում, Ռումինիայում, Հունգարիայում, Ալբանիայում՝ ավելի քան 50 միլիոն, Ճապոնիայում, Կորեայում, Անգլիայում, Արգենտինայում և այլ երկրներում՝ 50 միլիոն, Գերմանիայում՝ ավելի քան 20 միլիոն, Ֆրանսիայում՝ 15 միլիոն, Իտալիայում՝ 16 միլիոն, ԱՄՆ-ում՝ 2,5 միլիոն մարդ։ Մինչև այսօր խաղաղության Ստոկհոլմի Կոչի տակ ընդամենը հավաքվել է մոտ 500 միլիոն ստորագրություն։ (Ծափահարություններ)։

Դա մի լուրջ ուժ է և ահեղ նախազգուշացում պատերազմի հրձիգներին։

Խաղաղության համար պայքարող ժողովուրդները վստահ են, որ իրենց արդար գործը կհաղթանակի։ Նրանք կձախողեն պատերազմի հրձիգների պլանները։



***

Ընկերնե՛ր։

Այն մեծ հաջողությունները, որ ձեռք է բերել մեր երկիրը հետպատերազմյան ժամանակաշրջանում, սովետական մարդկանց հերոսական աշխատանքի և կոմունիստական պարտիայի, Լենինի-Ստալինի պարտիայի ճիշտ քաղաքականության արդյունքն են։

Պարտիայի կազմակերպող ու ղեկավարող դերը դրսևորվում է մեր պետական ու հասարակական կյանքի բոլոր բնագավառներում։ Պատերազմը վերջանալուց հետո պարտիան սովետական մարդկանց բոլոր ջանքերն ուղղեց տնտեսության վերականգնմանը, մեր Հայրենիքի հետագա բարգավաճմանը։ Պարտիայի կոչով երկրում ծավալվել է համաժողովրդական սոցիալիստական մրցություն՝ հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։ Պարտիան ապահովել է սովետական մարդկանց կուլտուրայի ու նյութական բարեկեցության վերելքը։ Պարտիայի դրոշի ներքո է՛լ ավելի է ամրապնդվել սովետական հասարակության բարոյա-քաղաքական միասնությունը, զարգացել և ամրապնդվել է ժողովուրդների ստալինյան բարեկամությունը։ Աճել են աշխատողների բազմաթիվ նոր կադրեր տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում, կադրեր, որոնց դաստիարակել է պարտիան և որոնք զինված են մարքսիստական-լենինյան գիտությամբ։

Մեր կոմունիստական պարտիայի գործունեությունը ցույց է տալիս, որ նա ամեն բանից վեր է դասում ժողովրդի շահերը և հմուտ կերպով պայքարում է այդ շահերի համար։ Ծառայելով Հայրենիքին ու ժողովրդին, պարտիան նվաճել է սովետական մարդկանց սերը և նրանց լիակատար վստահությունը։ (Բուռն ծափահարություններ)։

Դրանումն է Սովետական Միության ուժի աղբյուրը։ (Երկարատև ծափահարություններ)։

*Կեցցե՛ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի անպարտելի դրոշը։* (Ծափահարություններ):

*Կեցցե՛ հզոր սովետական ժողովուրդը։* (Ծափահարություններ):

*Կեցցե՛ մեր փառապանծ կոմունիստական պարտիան։* (Երկարատև ծափահարություններ):

*Կեցցե՛ խաղաղությունն ամբողջ աշխարհում։* (Երկարատև, բուռն ծափահարություններ: Բոլորը ոտքի են կանգնում, լսվում են ողջույնի բացականչություններ ի պատիվ ընկեր Ի. Վ. Ստալինի. «Մեծ Ստալինին փա՜ռք», «Կեցցե՛ ընկեր Ստալինը», «Կեցցե՛ մեր հաղթանակների կազմակերպիչ Մեծ Ստալինը»):

---

Պատասխանատու խմբագիր՝
Ռ. ԽԱՉԱՏՐՅԱՆ